## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Նյութեր զրույցների համար

Լ. ՍՏԵՓԱՆՅԱՆ.— Հայկական ՍՍՌ 1957 թվականի Պետական բյուջեն . . . . . . . . 1
Գ. ՍՏԵՓԱՆՅԱՆ.— Կազմակերպված անցկացնենք 1957 թվականի գարնանացանը . . . . . 13

Ագիտացիոն աշխատանքի փորձից

Հ. ՂԱԶԱՐՅԱՆ— Մեր ագիտկոլեկտիվը . . . . 21

Օգտագործիր զրույցի ժամանակ

Մեր ռեսպուբլիկայի նվաճումները 1956 թվականին (թվեր և փաստեր) . . . . . . . . 26

Միջազգային թեմաներ

Ս. ՏԱՆԻՆ— Ալժիրը մարտնչում է . . . . . 32

Օգնություն ագիտատորներին

Թեմաներ և գրականություն ագիտատորների ապրիլ ամսվա զրույցների համար . . . . . 43

---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, Հեռախոս՝ 2—52—78։





# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ 1957 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Լ. ՍՏԵՓԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստր

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի 1957 թվականի Պետական բյուջեն ելնում է այն խնդիրներից, որոնք դրված են երկրի առջև Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի և Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի կողմից։

1957 թվականի Պետական բյուջեն սահմանված է եկամուտների գծով՝ մեկ միլիարդ 649 միլիոն 690 հազար ռուբլի գումարով, ծախսերի գծով՝ մեկ միլիարդ 648 միլիոն 690 հազար ռուբլի գումարով, ծախսերի նկատմամբ եկամուտների մեկ միլիոն երկու հարյուր ութսուն հազար ռուբլի գերազանցումով։

Բյուջեի եկամուտների հիմնական մասը ստացվում է պետական ու կոոպերատիվ կազմակերպություններից։





Շահույթներից մասհանումները, շրջանառության հարկը, եկամտահարկը կոոպերացիայից ու կոլտնտեսություններից և սոցիալիստական տնտեսության մյուս եկամուտները կկազմեն մեկ միլիարդ 345 միլիոն 548 հազար ռուբլի, կամ բյուջեի բոլոր եկամուտների 81,6 տոկոսը։

Շրջանառության հարկի մուտքերը բյուջեում կավելանան 321 միլիոն ռուբլով՝ հիմնականում հացամթերքների, մսեղենի ու կաթնեղենի, գործվածքների և այլ ապրանքների իրացումն ավելացնելու հաշվին։

Ժողովրդական տնտեսության շահույթները պլանավորված են 626 միլիոն 478 հազար ռուբլի գումարով, որից արդյունաբերության շահույթները կկազմեն 378 միլիոն 794 հազար ռուբլի։ Դրանց ստացումը կապահովի նոր տեխնիկայի հետագա արմատավորման, արտադրության աճի և ինքնարժեքի իջեցման շնորհիվ։

Շահույթներից մասհանումները բյուջեին՝ կկազմեն 416 միլիոն 492 հազար ռուբլի։

Տրակտորային աշխատանքների պլանի աճին համապատասխան, ՄՏԿ-ների աշխատանքների համար ստացվող եկամուտներից բյուջե մուտք կլինի 11 միլիոն 600 հազար ռուբլի, կամ աճը կկազմի 30,6 տոկոս։



Ընթացիկ տարում կոլտնտեսություններից ռեսպուբլիկայի բյուջե գանձվող եկամտահարկի գումարը կկազմի 36 միլիոն 940 հազար ռուբլի։ Բյուջեում բնակչության հարկային վճարումները, աշխատավարձի ֆոնդի աճի պայմաններում, կմնան 1956 թվականի մակարդակին։

Դա հետևանք է աշխատավարձի չհարկվող մինիմումի բարձրացման, որի շնորհիվ հարկումից ազատվում են մեծ թվով բանվորներ ու ծառայողներ։

Բնակչության մեջ բաժնեգրության կարգով իրացվող փոխառություններից բյուջեի մուտքերը ընթացիկ տարում պլանավորվում են 67 միլիոն 200 հազար ռուբլի գումարով, կամ անցյալ տարվա պլանից մեկ քառորդով պակաս։ Այդպիսի իջեցումը բացատրվում է նոր փոխառության թողարկման գումարի ենթադրվող նվազեցմամբ։

Զգալիորեն աճել են բնակչության ավանդները ռեսպուբլիկայի խնայողական դրամարկղներում։ Բավական է նշել, որ ավանդների մնացորդները խնայդրամարկղներում, 1957 թվականի հունվարի մեկի դրությամբ, հասան 367 միլիոն ռուբլու կամ աճը կազմեց 69 միլիոն ռուբլի և նախորդ տարվա համեմատությամբ կրկնապատկվեց։ Այդ

*թվերը անկասկած վկայում են աշխատավորության նյութական բարեկեցության բարձրացման մասին։*



*1957 թվականի Պետական բյուջեի եկամուտները կապահովեն ռեսպուբլիկայի ժողովրդա-տնտեսական պլանով նախատեսված էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման միջոցառումների ֆինանսավորումը։*

*Ժողովրդական տնտեսության ճյուղերի ֆինանսավորման համար, չհաշված միութենական ձեռնարկությունները, ընդամենը կհատկացվի 1 միլիարդ 24 միլիոն 840 հազար ռուբլի, կամ անցյալ տարվա համեմատությամբ 15 տոկոսով ավելի, որից բյուջեի հաշվին 484 միլիոն 327 հազար ռուբլի։*

*Այդ գումարները կօգտագործվեն կապիտալ ներդրումների, շրջանառու միջոցների ավելացման և մյուս ծախսերի համար և կապահովեն սոցիալիստական արտադրության ընդլայնումը։*

*Արդյունաբերության հետագա զարգացման համար ձեռնարկությունների սեփական միջոցների հետ միասին կծախսվի 418 միլիոն 920 հազար ռուբլի։*



*Անցած տարի, իրականացնելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի որոշումները, ռեսպուբլիկայի արդյունաբերությունը առաջընթաց լուրջ քայլ կատարեց իր աշխատանքի հետագա բարելավման ուղղությամբ։ Արդյունաբերական բոլոր մինիստրությունները ապահովեցին պլանավորված արտադրանքի թողարկումը։*

*Աշխատանքի արտադրողականության աճը գերազանցեց միջին աշխատավարձի աճից. ինքնարժեքի իջեցման առաջադրանքները և կուտակումների պլանը գերակատարվեցին։ Ներկայումս արդյունաբերության ամենագլխավոր խնդիրը արտադրության մեջ նոր տեխնիկայի արմատավորումն է։*

*Ռեսպուբլիկայում 1956 թվականին նոր տեխնիկայի արմատավորման համար, բանկային վարկի հետ միասին, արդյունաբերությանը հատկացվել է 44 միլիոն ռուբլի, իսկ այս տարի կհատկացվի 59 միլիոն ռուբլի։*

*Պարտիայի Կենտկոմի Դեկտեմբերյան և Փետրվարյան պլենումների որոշումները պահանջում են վճռականապես վերացնել տընտեսության պլանավորման և ղեկավարման թերությունները, գտնել և օգտագործել ռեզերվները, բոլոր ցուցանիշներով կատարել*

պլանները՝ նոր տեխնիկայի արմատավորման հիման վրա։

Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել 1956 թվականին նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ասպարեզում։

Ռեսպուբլիկայում աճել է անասունների գլխաքանակը։ Բարձրացել է անասնաբուծության մթերատվությունը և որոշ կուլտուրաների բերքատվությունը։ Դա հնարավորություն տվեց ժամկետից շուտ կատարելու մի շարք մթերքների մթերման պետական պլանները։

Գյուղատնտեսական մթերքների մթերման գների բարձրացման հետևանքով կոլտնտեսությունների դրամական եկամուտները աճել են 91 միլիոն ռուբլով կամ 14,5 տոկոսով։ Կարևոր խնդիրներ են դրված մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առջև նաև ընթացիկ տարում։

Միութենական բյուջեից կատարվող հատկացումներից բացի, գյուղատնտեսության, ջրային տնտեսության և անասնաբուծության զարգացումը ֆինանսավորելու համար ռեսպուբլիկայի բյուջեից հատկացվում է 120,4 միլիոն ռուբլի, կամ անցյալ տարվա համեմատությամբ 21,1 տոկոսով ավելի։

Ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղե-



րում ռադիոյի և հեռախոսային ցանցը ընդլայնելու, ինչպես նաև հեռուստատեսական կայանի շինարարությունը շարունակելու համար բյուջեի և կապի մինիստրության սեփական միջոցների հաշվին կծախսվի 18 միլիոն ռուբլի։

Ժողովրդական տնտեսության զարգացման 6-րդ հնգամյա պլանին և Դեկտեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան, հատուկ ուշադրություն է դարձվում կապիտալ շինարարության և հատկապես բնակարանային շինարարության հարցերին։

Ռեսպուբլիկական և միութենական-ռեսպուբլիկական մինիստրությունների գծով 1957 թվականին կապիտալ ներդրումները պլանավորված են 344 միլիոն 300 հազար ռուբլի ծավալով, բյուջեից կֆինանսավորվի 268 միլիոն ռուբլի։

1957 թվականին ռեսպուբլիկայում կկատարվի 214 միլիոն ռուբլու բնակարանային շինարարություն։ Բացի դրանից, կշարունակվի անհատական բնակարանային շինարարությունը, որի համար բանկային վարկ է հատկացվելու 15 միլիոն ռուբլի։

1956 թվականին կապիտալ ներդրումների բյուջետային ֆինանսավորումը լրիվ օգտագործվեց։ Սակայն կապիտալ ներդրումների

ասպարեզում որպես լուրջ թերություններ շարունակում են մնալ կարողությունների ժամանակին շահագործման չհանձնվելը և միջոցների փոշիացումը, որոնք հանգեցնում են շինարարության արժեքի թանկացման։



Սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորման համար ծախսվելու է 1 միլիարդ 34 միլիոն 469 հազար ռուբլի կամ 12,3 տոկոսով ավելի, քան 1956 թվականին։ Այդ հատկացումները բյուջեում կազմում են բոլոր ծախսերի 62,7 տոկոսը։

Եթե հաշվի առնենք, որ բուհերի, տեխնիկումների և դպրոցների պահպանման համար զգալի հատկացումներ են կատարվում նաև միութենական բյուջեից, ապա պարզ կդառնա, որ մեր ռեսպուբլիկայում ժողովրդի կուլտուրայի հետագա զարգացման և նրա նյութական բարեկեցության համար ծախսվում են հսկայական միջոցներ։ Լուսավորության միջոցառումների համար ծախսերը կկազմեն 612 միլիոն ռուբլի։

Նոր կազմակերպված գիշերօթիկ դպրոցների և դպրոցներում երկարացված օրով խմբերի համար նախատեսվում է 13 միլիոն ռուբլի։



Մանկապարտեզների, պիոներական տների, սպորտային դպրոցների, տուրիստական բազաների պահպանման և արտադպրոցական այլ միջոցառումների համար կծախսվի 42 միլիոն 700 հազար ռուբլի։

Արվեստի միջոցառումների, մամուլի, ինչպես նաև գրադարանների, կուլտուրայի տների, թանգարանների և մյուս հիմնարկների ֆինանսավորման համար հատկացվում է 70 միլիոն ռուբլի։

Ընթացիկ տարում գիտության համար ծախսերը կկազմեն 77 միլիոն 352 հազար ռուբլի, դրանից Գիտությունների ակադեմիային կհատկացվի 44 միլիոն 880 հազար ռուբլի, առանց կապիտալ ներդրումների, անցյալ տարվանից ավելի է 18,3 տոկոսով։

Բուժ-պրոֆիլակտիկ հիմնարկների, մանկամսուրների, սանատորիաների և ֆիզիկական կուլտուրայի միջոցառումների համար կծախսվի 255 միլիոն 725 հազար ռուբլի։

Սոցիալական ապահովության միջոցառումների համար հատկացումները կկազմեն 166 միլիոն 145 հազար ռուբլի։ Պետական կենսաթոշակների նոր օրենքի կապակցությամբ կենսաթոշակների վճարման

հատկացումները, անցյալ տարվա համեմատությամբ, ավելի են 64 միլիոն ռուբլով։



Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների 1957 թվականի բյուջեները պլանավորված են 778 միլիոն 847 հազար ռուբլի գումարով, կամ անցյալ տարվա համեմատությամբ աճում են 7 տոկոսով։

Տեղական բյուջեների սեփական եկամուտները կկազմեն 186 միլիոն 228 հազար ռուբլի, պետական եկամուտներից ու հարկերից մասհանումները կկազմեն 441 միլիոն 584 հազար ռուբլի և բացի այդ, դոտացիա կտրվի 147 միլիոն 216 հազար ռուբլի։

1957 թվականին զգալիորեն ավելացվում են հատկացումները սոցիալ-կուլտուրական միջոցառումների, քաղաքների, շրջանային կենտրոնների ու բանվորական ավանների բարեկարգման և բնակարանային ֆոնդի նորոգման համար։

Պետական բյուջեով սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար նախատեսված ընդհանուր գումարից տեղական բյու-



ջեներով պլանավորվում է 570 միլիոն 733 հազար ռուբլի և հիմնականում հատկացվում լուսավորության ծախսերին։

Տեղական բյուջեում ավելացված են նաև գյուղական հիվանդանոցների համար սննդի, սպիտակեղենի և դեղորայքի ձեռք բերման ծախսերի նորմաները։

Աշխատավորների կենցաղային պայմանների հետագա բարելավման նպատակով կոմունալ-բնակարանային տնտեսության և բարեկարգման միջոցառումները ֆինանսավորելու համար հատկացվում է 175 միլիոն ռուբլի, այսինքն 1956 թվականի համեմատությամբ 21 միլիոն ռուբլով ավելի։

Մեծ ծախսեր են կատարվելու քաղաքներում, շրջանային կենտրոններում ու բանվորական ավաններում՝ ասֆալտապատման, կանաչապատման, լուսավորման, բնակելի ֆոնդի հիմնական նորոգման և մյուս աշխատանքների համար։ Քաղաքային ու շրջանային Սովետների բնակելի ֆոնդի կապիտալ նորոգման ֆինանսավորումը բյուջեում ավելացվում է երկու անգամ։ Զգալի գումարներ կտրամադրվեն այն ավանների բարեկարգման համար, որտեղ բավականին մեծ թվով Հայրենիք վերադարձած հայեր են ապրում։

Ժողովրդական տնտեսության անշեղ վերելքը և արտադրության ղեկավարման ուժեղացման անհրաժեշտությունը պահանջում են շարունակել պետական ապարատի աշխատանքի հետագա բարելավումը։ Պետական կառավարման օրգանների պահպանման 1957 թվականի հատկացումները սահմանված են 86 միլիոն 300 հազար ռուբլի գումարով։

Վերջին տարիներս ռեսպուբլիկայում ըզգալի աշխատանք կատարվեց կառավարչական ապարատի աշխատանքները բարելավելու և ավելորդ հաստիքները վերացնելու ուղղությամբ։ Միայն 1956 թվականին կրճատվեց 1249 միավոր, որը տարեկան տվեց ավելի քան 10 միլիոն ռուբլի խնայողություն։ Մենք հնարավորություններ ունենք էլ ավելի պարզեցնելու պետական ապարատը, որպեսզի այն դարձնենք ավելի օպերատիվ և խնայողական։

Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը միջոցառումներ են իրագործում բարելավելու ժողովրդական տնտեսության ղեկավարումը, որը կառուցված պետք է լինի դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքների վրա։

---

# ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ 1957 ԹՎԱԿԱՆԻ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ


Գ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի Գյուղբաժնի վարիչ


Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում եռանդուն աշխատանք է ծավալված 1957 թվականի գարնան գյուղատնտեսական աշխատանքները կազմակերպված և որակական բարձր ցուցանիշներով կատարելու համար։ Կոլտնտեսային աշխատավորությունը, ոգեշնչված ՍՄԿՊ XX համագումարի որոշումներով, ջանք չի խնայում գյուղատնտեսական մթերքների արտադրության գործում շեշտակի վերելք ստեղծելու մասին պարտիայի և կառավարության դիրեկտիվները կենսագործելու համար։

Գյուղատնտեսության արտադրության գործում վեցերորդ հնգամյակի երկրորդ տարվա խնդիրների կատարումը ամենից առաջ պայմանավորված է այն բանով, թե կոլտնտեսություններն ու սովխոզները ինչպիսի կազմակերպվածությամբ կսկսեն գարնանագյուղատնտեսական աշխատանքները։

Ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայանները մինչև այս տարվա մարտի 1-ը տրակտորների վերանորոգման պլանը կատարեցին 106,2 տոկոսով։ Շատ կոլտնտեսություններ ցանքի համար ժամկետից շուտ պատրաստեցին սերմացուները, տրակով կատարեցին գյուղգործիքների նորոգումը և այժմ կազմ ու պատրաստ սպասում են գարնանացանին։

Սակայն մի շարք շրջաններում պարտիական, սովետական կազմակերպությունները, ՄՏՍ կայանների ղեկավարներն ու կոլտնտեսությունների վարչությունները ժամանակին անհրաժեշտ աշխատանք չծավալեցին գարնանացանին բազմակողմանիորեն նախապատրաստվելու համար։ Այլ կերպ ինչո՞վ կարելի է բացատրել, երբ Իջևանի, Ալավերդու, Ազիզբեկովի, Կոտայքի, Կրասնոսելսկի, Կալինինոյի և Թալինի շրջաններում հացահատիկային կուլտուրաների սերմացուների կուտակումը մարտի 1-ի դրությամբ կատարված է ընդամենը 54,7 տոկոսից մինչև 88,3 տոկոսով։

Ազիզբեկովի, Ախուրյանի, Ղուկասյանի, Կոտայքի և Միկոյանի շրջանների կոլտնտեսություններում կարտոֆիլի ցանքի համար պահանջված սերմացուի կուտակման պլա-



նը կատարված է ընդամենը 43,9 տոկոսով։ Դրությունը վատ է հատկապես բազմամյա և միամյա խոտաբույսերի սերմացուների կուտակման և ցանքի համար անհրաժեշտ կոնդիցիայի հասցնելու գործը։ Եթե Էջմիածնի, Արտաշատի, Հոկտեմբերյանի, Շահումյանի շրջանների կոլտնտեսություններում բազմամյա և միամյա խոտաբույսերի սերմացուների կուտակման պլանը կատարված է 110—153 տոկոսով, ապա Իջևանի, Բասարգեչարի, Վեդու, Ղուկասյանի, Կրասնոսելսկի շրջանների կոլտնտեսություններում այն կազմում է ընդամենը 6—38,5 տոկոս։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մարտի 1-ի տվյալներով հացահատիկային կուլտուրաների սերմացուների կուտակման պլանը կատարված է 98,1 տոկոսով, կարտոֆիլինը՝ 94,4 տոկոսով և բազմամյա ու միամյա խոտաբույսերինը՝ 54,9 տոկոսով։

Մյուս կարևոր հարցը դա գարնանացան կուլտուրաների՝ հացահատիկի, կարտոֆիլի, բազմամյա և միամյա խոտաբույսերի ու բանջարեղենի ցանքերի համար անհրաժեշտ քանակությամբ սերմացուներ ձեռք բերելը և եղածը մաքրելն ու կոնդիցիայի հասցնելն է։ Այն ժամանակ, երբ մի շարք շըր-

ջաններում արդեն սկսված են գարնանացանի գործնական աշխատանքները, առանձին շրջանների կոլտնտեսություններում դեռևս չի լրացված սերմացուների պակասը։

Գարնանացանը բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու գործում վճռական նշանակություն ունի գյուղատնտեսական տեխնիկայի՝ տրակտորների և մյուս մեքենաների ու գործիքների վերանորոգումը, պակասող գործիքների ժամանակին ձեռք բերումը։ Ճիշտ է, տրակտորների վերանորոգման պլանը ռեսպուբլիկայի ՄՏ կայաններում գերակատարված է, սակայն գութանների նորոգումը կատարված է 91 տոկոսով, շարքացաններինը՝ 84,2 տոկոսով, կուլտիվատորներինը՝ 85,4 տոկոսով։ Դրությունն ավելի վատ է Անգեղակոթի, Ապարանի, Ղուկասյանի, Թալինի, Արթիկի, Ղարաքիլիսայի, Մանթաշի ՄՏ կայաններում, ուր շարքացանների նորոգման պլանը մարտի 1-ի տվյալներով կատարված է ընդամենը 33,3-ից մինչև 62,5 տոկոսով։ Գորիսի, Ջրվեժի, Ամասիայի, Արարատի, Արտաշատի, Կոտայքի, Մխչյանի ՄՏ կայաններում կուլտիվատորների նորոգման պլանը կատարված է 28,6 տոկոսից մինչև 73,3 տոկոսով։

Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ-



պեսզի ՄՏ կայանների ամբողջ մեքենայական պարկերը կազմ ու պատրաստ լինեն գարնանացանի աշխատանքներին։ Չի կարելի սահմանափակվել միայն տրակտորների նորոգման պլանների կատարումով։

Գյուղատնտեսական օրգանների և մեխանիզատորների պատվի գործը պետք է լինի ամենակարճ ժամանակամիջոցում ավարտել գյուղատնտեսական գործիքների վերանորոգումը՝ ընթացիկ տարվա գարնանացանը սեղմ ժամկետում և բարձր որակով անցկացնելու համար։

Անհրաժեշտ է լուրջ ուշադրություն դարձնել նաև կոլտնտեսություններում եղած գյուղատնտեսական գործիքների և մանր ինվենտարի նորոգման ու պակասը լրացնելու վրա։ Մի շարք շրջաններում և առանձին կոլտնտեսություններում նորմալ կերպով չեն գործում արհեստանոցները, վատ են ընթանում գյուղգործիքների նորոգման աշխատանքները։ Ռեսպուբլիկայի մատակարարող օրգանները, հատկապես Հայկոոպը, անբավարար է սպասարկում կոլտնտեսություններին անհրաժեշտ քանակությամբ շինանյութերով, վառելիքով, որը բացասաբար է անդրադառնում գարնանացանի նախապատրաստական աշխատանքների վրա։





Հացահատիկային կուլտուրաների, կարտոֆիլի, բանջարեղենի, տեխնիկական կուլտուրաների և գարնանացան այլ կուլտուրաների բարձր բերքատվության հուսալի երաշխիք է պարարտացումը, այսինքն՝ տեղական և հանքային պարարտանյութերի ճիշտ և ժամանակին օգտագործումը։ Այդ մասին է խոսում առաջավոր կոլտնտեսությունների երկարամյա աշխատանքի դրական փորձը։ Շատ շրջաններում եռուն աշխատանք է տարվում հանքային և տեղական պարարտանյութերը դաշտ փոխադրելու համար։ Կալինինոյի, Բասարգեչարի, Ախուրյանի, Ստեփանավանի շրջանների կոլտնտեսությունները մեծ քանակությամբ տեղական պարարտանյութ են տեղափոխել դաշտ։ Սակայն այդպես չէ վիճակը Ազիզբեկովի, Ապարանի, Աշտարակի, Միկոյանի, Սիսիանի շրջանների կոլտնտեսություններում, որտեղ մինչև այժմ օրգանական պարարտանյութերի դաշտ փոխադրելու աշխատանքները խիստ կերպով ձգձգվում են։ Այդ նույն շրջաններում լավ չի կազմակերպված նաև հանքային պարարտանյութերի փոխադրումն ու նրանց օգտագործումը։ Մարտի 1-ի տվյալներով ռեսպուբլիկայի շրջանային բազաներում կուտակված



է 15.101 տոննա հանքային պարարտանյութ։

Շրջանային ղեկավար օրգաններն ու կոլտնտեսությունների վարչությունները պետք է կտրուկ միջոցներ ձեռնարկեն ուժեղացնելու հանքային և օրգանական պարարտանյութերի դաշտ փոխադրման տեմպն ու նպատակահարմար օգտագործեն այն։

Որոշ շրջաններում դանդաղ են ընթանում ջերմոցների նախապատրաստման և ցանքի աշխատանքները։ Ծխախոտի, բանջարանոցային կուլտուրաների բարձր բերքի ստացումը պայմանավորված է ջերմոցային տնտեսության լավ վիճակով։ Ժամանակին և առողջ սածիլների ստացումը բարձր բերքի երաշխիքն է։ Կոլտնտեսություններում պետք է ուժեղացնել սածիլային տնտեսության աշխատանքները, այդ գործում ներգրավելով բարեխիղճ և գործունյա կոլտնտեսականներին, որոնք կարողանան ապահովել կոլտնտեսությունները ծխախոտի, բանջարանոցային կուլտուրաների ցանքի համար անհրաժեշտ քանակությամբ բարձրորակ սածիլներով։

Բերքատվության բարձրացման վճռական պայմաններից մեկը՝ դա ցանքի և մշակության ժամկետների խստագույն պահպանումն է։ Ագրոտեխնիկական կոմպլեքս մի-

ջրցումների ճշգրիտ կերպով կիրառումը, ըստ տարբեր գոտիների, անգամ առանձին կոլտնտեսությունների ռելեֆային պայմաններից ելնելով տարբեր միկրոռայոններում ցանքի և մշակության ժամկետների ճիշտ պահպանումը անհրաժեշտ է բարձր բերք ստանալու համար։

Գարնանացանի նախապատրաստման գործում կարևոր նշանակություն ունի ոռոգման ամբողջ ցանցի՝ ջրանցքների, առուների և ջրամբարների մաքրումն ու կարգավորումը, ջրային ռեսուրսների հետագա ռացիոնալ օգտագործումը։

Գարնան գյուղատնտեսական աշխատանքների այս օրերին մեծ անելիքներ ունեն մեր ագիտատորները։ Նրանք պետք է սիստեմատիկաբար մասսայականացնեն և պրոպագանդեն գյուղատնտեսության առաջավորների փորձը, կոնկրետ օրինակներով ցույց տան ունկնդիրներին, թե աշխատանքի առաջավորներն ինչպես և ինչ միջոցներով են բարելավել ցանքերի մշակությունը և հասել բարձր բերքատվության։ Անհրաժեշտ է կոլտնտեսային աշխատանքի անվանի մարդկանց լավագույն աշխատանքի օրինակները ամենուրեք ամփոփել և սոցիալիստական դաշտերի բազմահազար մարդկանց սեփականությունը դարձնել։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ՄԵՐ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ

Վ. ՂԱԶԱՐՅԱՆ
Ախտայի շրջանի Աթարբեկյանի կոլտնտեսության ագիտկոլեկտիվի ղեկավար

Կոլտնտեսականների շրջանում կատարվող ագիտացիոն-քաղաքական աշխատանքները կազմակերպելու գործում որոշ փորձ ունի մեր կոլտնտեսության ագիտկոլեկտիվը։ Ագիտկոլեկտիվի մեջ ընդգրկված են գյուղի ուսուցիչները, գյուղատնտեսական մասնագետները և ագիտացիոն աշխատանքի փորձ ունեցող պարտիական ու սովետական ակտիվը։

Ագիտատորներին օգնելու համար սիստեմատիկաբար հրավիրում ենք սեմինար պարապմունքներ և խորհրդակցություններ։ Նրանց քաղաքական մակարդակը բարձրացնելու նպատակով կազմակերպում ենք դասախոսություններ և զրույցներ։ Հաճախակի լսում ենք նաև առաջավոր ագիտատորների փորձի մասին։ Վերջին սեմինար պարապմունքներից մեկում ագիտատորները լսեցին

կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Հակոբյանի զեկուցումը՝ գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման մասին։ Կոնկրետ փաստերի հիման վրա նա ցույց տվեց, որ կոլտնտեսությունը բոլոր հնարավորություններն ունի արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար։ Օրինակ բերվեց կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի և № 5 դաշտավարական բրիգադայի կատարած լավ աշխատանքը, թե ինչպես նրանք ավելի քիչ աշխատանք ներդնելով ստացել են բարձր եկամուտ։ Ոչխարաբուծական ֆերմայի առաջին հոտի հովիվները անցյալ տարի լավ կազմակերպելով ոչխարների խնամքը և կերակրումը, յուրաքանչյուր ոչխարից ստացան 4 կիլոգրամ բուրդ և չտվեցին ոչ մի ոչխարի կորուստ։ Դաշտավարական № 5 բրիգադան յուրաքանչյուր հեկտարից միջինը հավաքեց 13,5 ցենտներ հացահատիկ, որը կոլտնտեսության միջին բերքատվությունից 3,5 ցենտներով բարձր է, ծախսելով ավելի քիչ աշխատանքային օր։

Այս սեմինարից հետո ագիտատորները իրենց զրույցների համար բազմաթիվ փաստեր հավաքեցին կոլտնտեսությունում գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի իջեցման մասին։ Հերթական պարապմունքներից



մեկում կոլտնտեսության անվանի կթվորուհի Ռիմա Հունանյանը պատմեց, թե ինչպես ինքը 1956 թվականին իր խնամած յուրաքանչյուր կովից ստացել է 2100 լիտր կաթ, նախատեսված 1400 լիտրի փոխարեն։ Կթվորուհին ցույց տվեց, որ անասունների լավ խնամքի ու կերակրման ճիշտ կազմակերպման, օրվա ռեժիմի ճիշտ պահպանման շնորհիվ կարելի է հասնել բարձր կաթնատվության։

Ուսանելի փորձ ունի ագիտատոր Վ. Մըկըրտչյանը, նա ագիտացիան կապում է առօրյա աշխատանքի հետ։ Ագիտացիայի ժամանակ նա օգտագործում է կոլտնտեսության ձեռք բերած հաջողությունները, խոսում է թերությունների մասին, և նշում այդ թերությունները վերացնելու կոնկրետ միջոցները։ Զրույցների ժամանակ ագիտատորն օգտագործում է ցուցադրական նյութեր, քարտեզներ, դիագրամաներ և այլն։

Մեր ագիտկոլեկտիվը զգալի աշխատանք կատարեց տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստման և անցկացման գործում։ Ագիտատորներին պարբերաբար հրահանգներ ու ցուցմունքներ էին տրվում պարտիայի ու կառավարության որոշումները մասսայականացնելու ուղղու-

թյամբ։ Տեղական Սովետների ընտրությունների ժամանակ էլ ավելի աշխուժացավ քաղաքական, մասսայական աշխատանքը թաղամասերում, ֆերմաներում և բրիգադաներում։

Մեր երկրի բոլոր կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին, ՄՏ կայանների ու սովխոզների բանվորներին, պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին, սովետական և գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսական մասնագետներին ու բոլոր աշխատողներին ուղղված ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումը ստանալուն պես կազմակերպեցինք նրա լայնորեն պարզաբանումն ու ծանոթացումը կոլտնտեսականների շրջանում, նախօրոք հրահանգավորելով ագիտատորներին։

Ագիտկոլեկտիվը լուրջ աշխատանք է կատարում ցուցադրական ագիտացիայի ուղղությամբ։ Ագիտատորների անմիջական մասնակցությամբ գեղարվեստորեն ձևավորվել են բազմաթիվ լոզունգներ ու կոչեր և փակցվել ակումբում ու գյուղի աչքի ընկնող տեղերում։ «Մատղաշը ֆերմայի հիմքն է, աճեցնենք նրանց անկորուստ», «1957 թվա-



կանը դարձնենք բերքատվության բարձրացման շեշտակի վերելքի տարի» և այլն։

Այս օրերին մեր ագիտկոլեկտիվը աշխատավորության շրջանում լուրջ աշխատանք է կատարում առաջիկա գարնանացանը կազմ ու պատրաստ դիմավորելու համար։ Ջոկվել ու պետական կոնդիցիայի են հասցվել բոլոր սերմերը, վերանորոգվել են գյուղգործիքները։

Մեր ագիտատորները իրենց առջև խնդիր են դրել աշխատավորության շրջանում լայնորեն ծավալել քաղաքական-մասսայական աշխատանքները, մոբիլիզացնել կոլտնտեսային աշխատավորության ուժերը պարտիայի 20-րդ համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները անշեղորեն կենսագործելու, 1957 թվականը գյուղատնտեսական մթերքների արտադրության առատ տարի դարձնելու համար։

---

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ 1956 ԹՎԱԿԱՆԻՆ

(Թվեր և փաստեր)

*Հայաստանի աշխատավորներն անցյալ տարի զգալի հաջողությունների հասան ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում։*

*Ստորև տպագրված թվերն ու փաստերը համառոտակիորեն բնութագրում են այդ հաջողությունները։*

★ *Ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի անցյալ տարվա պլանը կատարվել է 104 տոկոսով։ Արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աճել է 10 տոկոսով։*

★ *Երևան քաղաքի տերիտորիայում գտնվող ձեռնարկությունների համախառն արտադրանքի արտադրության պլանը կատարված է 104 տոկոսով, 1955 թվականի համեմատությամբ աճը կազմում է 11 տոկոս։*



★ *Ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության ծավալը 1955 թվականի համեմատությամբ, 1956 թվականին կազմել է. էլեկտրաէներգիա՝ 104 տոկոս, սև պղինձ՝ 105 տոկոս, կաուստիկ սոդա՝ 104 տոկոս, ավտոդողեր՝ 135 տոկոս, շրջիկ էլեկտրակայաններ՝ 113 տոկոս, ուժային տրանսֆորմատորներ՝ 142 տոկոս, լուսավորման էլեկտրալար՝ 113 տոկոս, ավտոմոբիլի պահեստամասեր՝ 126 տոկոս, կենտրոնախույս պոմպեր՝ 123 տոկոս, ցեմենտ՝ 99,7 տոկոս, շինարարական տուֆ՝ 114 տոկոս, բամբակե գործվածքներ՝ 99,6 տոկոս, բրդե գործվածքներ՝ 120 տոկոս, կոշիկ՝ 106 տոկոս, մահճակալներ՝ 111 տոկոս, կենդանական յուղ՝ 112 տոկոս, երշիկեղեն՝ 104 տոկոս, պանիր՝ 105 տոկոս, օճառ՝ 107 տոկոս և այլն։*

★ *Արդյունաբերության մեջ յուրացված է արտադրանքի բազմաթիվ նոր տեսակների արտադրությունը։ Այսպես, օրինակ, մեքենաշինարարները յուրացրել են ավելի կատարելագործված «1—Լ61» խառատային պտուտակահան հաստոցի, օդային կոմպրեսորների, վակուումպոմպերի, կոմպլեկտ տրանսֆորմատորային ենթակայանների, է-*

լեկտրաշարժիչների, ղեկավարման վահանիկների, քարհատ հաստոցների, աշտարակավոր կռունկների և կայմային ամբարձիչների արտադրությունը: Մեզ մոտ արդեն կատարվում է բարակ պողպատաթերթի գլանում:

★ Որոշակի հաջողություններ կան ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառում: 1956 թվականին ստացվել է գյուղատնտեսական կուլտուրաների ավելի բարձր բերք. այսպես, կոլտնտեսություններում բանջարեղենի համախառն բերքը 1956 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացել է 42 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 17 տոկոսով, կարտոֆիլինը՝ 9 տոկոսով: Համախառն բերքի ավելացումը տեղի է ունեցել գլխավորապես բերքատվության բարձրացման հաշվին:

★ Ավելացել է մթերատու անասունների գլխաքանակը: 1956 թվականի հոկտեմբերի 1-ի տվյալներով կոլտնտեսությունների, սովխոզների, կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների մթերատու անասունների ընդհանուր գլխաքանակը եղել է՝ խոշոր եղջերավոր անասուններ՝ 620 հազար գլուխ, այդ թվում կովեր՝ 201 հազար գլուխ, խոզերի գլխաքանակը կազմել է 135 հազար



գլուխ, ոչխարներինը՝ 1 միլիոն 647 հազար գլուխ: 1955 թվականի համեմատությամբ, 1956 թվականին ամբողջ ռեսպուբլիկայում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 25 հազարով, այդ թվում կովերինը՝ 10 հազար գլխով, խոզերի գլխաքանակը ավելացել է 3 հազար գլխով, իսկ ոչխարներինը՝ 99 հազար գլխով:

★ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում կաթի արտադրությունն ավելացել է 9 տոկոսով, բրդինը՝ 6 տոկոսով, մսինը՝ 1 տոկոսով, իսկ վերջին երեք տարիներում կաթի արտադրությունն ավելացել է 30 տոկոսով, մսինը՝ 11 տոկոսով, բրդինը՝ 15 տոկոսով:

★ 1955—1956 թ. թ. տնտեսական տարում կոլտնտեսություններում մեկ կովի միջին կաթնատվությունը կազմել է 1.152 կիլոգրամ և, նախորդ տարվա համեմատությամբ, աճել է 5 տոկոսով:

★ Գյուղատնտեսական արտադրության ավելացման և գյուղատնտեսական մթերքների պետական մթերման ու գնման գների բարձրացման շնորհիվ կոլտնտեսությունների դրամական եկամուտները, 1955 թվականի համեմատությամբ, ավելացան 13 տո-

կոսով, իսկ 1952 թվականի համեմատությամբ՝ ավելի քան 1,5 անգամ։

★ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում գրեթե լրիվին մեքենայացված են ցելն ու ցրտահերկը և բամբակենու ցանքը։ Կոմբայններով հավաքվել է հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության ավելի քան 60 տոկոսը։

★ Կապիտալ ներդրումների տարեկան պլանը ռեսպուբլիկայում 1956 թվականին կատարվել է 92 տոկոսով։ Բնակարանային շինարարության մեջ կապիտալ ներդրումների ծավալը 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աճեց 23 տոկոսով։

★ Պետական ու կոոպերատիվ կազմակերպությունները, ինչպես նաև քաղաքային բնակչությունը իր հաշվին և պետական վարկի օգնությամբ կառուցել ու շահագործման են հանձնել 200 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան կառուցել են 8.400 բնակելի տուն։

★ 1956 թվականին շահագործման հանձնվեցին կառուցվող Արզնու հիդրոէլեկտրակայանի երկու ագրեգատները։ 1956 թվականի



վերջերին գործարկվեց Երևանի հեռուստատեսական կենտրոնի առաջին հերթը։

★ Մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելացավ 9,1 տոկոսով։

★ Բոլոր տեսակի դպրոցներում, ուսումնարաններում և տեխնիկումներում 1956—57 ուսումնական տարում սովորում է ավելի քան 300 հազար հոգի։

★ Ռեսպուբլիկայի բարձրագույն ուսումնական հաստատություններում (ներառյալ հեռակա հաստատությունները) սովորում էր ավելի քան 20 հազար ուսանող, կամ 3 տոկոսով ավելի, քան 1955 թվականին։

★ 1956 թվականին ռեսպուբլիկայում գիտական և գիտա-մանկավարժական գործունեությամբ էին զբաղված 2.616 գիտական աշխատողներ։

★ Անցած տարի հրատարակված գրքերի տիրաժը կազմեց 6 միլիոն 400 հազար օրինակ։

★ 1956 թվականին հիվանդանոցային մահճակալների թիվը, 1955 թվականի համեմատությամբ, ավելացավ 6 տոկոսով։ Սանատորիաներում և հանգստյան տներում բուժվել ու հանգստացել են ավելի քան 23 հազար մարդ։

---

# ԱԼԺԻՐԸ ՄԱՐՏՆՉՈՒՄ Է

Ս. ՏԱՆԻՆ

Ալժիրը գտնվում է Հյուսիսային Աֆրիկայում, Միջերկրական ծովի ափին։ Նրա տերիտորիան հավասար է 2,2 միլիոն քառակուսի կիլոմետրի, որը չորս անգամ գերազանցում է Ֆրանսիայի տերիտորիան։ Բնակչությունը հաշվվում է մոտ 10 միլիոն մարդ, որի մեկ տասներորդը եվրոպական, մեծ մասամբ ֆրանսիական, վերաբնակներ են։ Երկրի բնակչության մոտ ինը տասներորդը ալժիրցիներ են։ Դա հիմնականում արաբա-բերբերական խառը բնակչություն է, որը խոսում է արաբերեն։ Երկրի հարավային շրջաններում բնակվում են բերբերական ցեղերը (կաբիլներ, տուարեգներ և այլն)։

1830 թվականին ֆրանսիական զորքերը ներխուժեցին Ալժիր և, կոտրելով տեղական բնակչության համառ դիմադրությունը, օկուպացրին ամբողջ երկիրը։ Դրանից հետո Ալժիրը պաշտոնապես հռչակվեց ֆրանսիական գաղութային տիրապետություն։ Ներ-



կայումս այդ երկիրը 1946 թվականի ֆրանսիական կոնստիտուցիայի և 1947 թվականի Ալժիրի ստատուտի համաձայն բաժանված է մի քանի դեպարտամենտների (խոշոր վարչա-տերիտորիալ միավոր), որոնք իրավապես հավասարեցված են ֆրանսիական մետրոպոլիայի դեպարտամենտներին։ Սակայն երկիրը առաջվա պես մնում է որպես գաղութ։ Այն կառավարում է գեներալ-նահանգապետը, որը վերջերս վերանվանվել է Ալժիրի մինիստր-ռեզիդենտ։

Ալժիրը տնտեսապես թույլ զարգացած երկիր է և հանդիսանում է Ֆրանսիայի էկոնոմիկայի կցորդը։ Ալժիրի տնտեսական կյանքում վճռական դեր է խաղում գյուղատնտեսությունը, որի տեսակարար կշիռը երկրի ազգային եկամտի մեջ համարյա երկու անգամ գերազանցում է արդյունաբերության բաժինը։ Ալժիրի գյուղատնտեսական արտադրության մեջ տիրապետող դիրք են գրավել ֆրանսիական գաղութարարները, որոնք զավթել են երկրի մշակվող ամբողջ հողատարածության մոտ կեսը, այդ թվում նաև համարյա բոլոր ոռոգելի հողերը։

Ալժիրի արմատական բնակչությունը, որին ֆրանսիական գաղութարարները ստիպել են վերաբնակվել հարավի չորային

շրջաններում, իրենց տնօրինության տակ ունեն երկրի բոլոր մշակվող հողերի մեկերրորդից մի փոքր ավելին։ Այդ հողերի մոտ 70 տոկոսն էլ պատկանում է խոշոր ֆեոդալներին, որոնք մեծ մասամբ այն վարձակալությամբ տալիս են տեղական գյուղացիներին։ Հողի մնացած 30 տոկոսը պատկանում է մանր գյուղացիական տնտեսություններին, որոնց թիվը հասնում է ավելի քան 600 հազարի։ Դրա հետ մեկտեղ Ալժիրում կան մոտ 1,5 միլիոն հողազուրկ վարձակալ գյուղացիներ և գյուղատնտեսական բանվոր-բատրակներ։ Ալժիրի գյուղական բնակչության գերակշռող մեծամասնությունն ապրում է ծայրահեղ ծանր, տառացիորեն աղքատիկ պայմաններում։

Ալժիրի արդյունաբերությունը ունի միակողմանի, գաղութային բնույթ։ Արագ տեմպերով երկրում զարգանում է լեռնամշակման արդյունաբերությունը, ինչպես նաև գյուղատնտեսական հումքի նախնական մշակման արդյունաբերությունը։ Մշակող արդյունաբերության ճյուղերը (մետալուրգիա, մեքենաշինություն) զգալիորեն ետ են մնում կամ էլ դեռ գտնվում են սաղմնային վիճակում։ Ալժիրում արդյունահանվում է երկաթի հանքաքար, նավթ, քարածուխ, կա-



պարա-ցինկային հանքանյութ, ֆոսֆատներ և որոշ քանակությամբ այլ հանքային հումք։ Համարյա այդ ամբողջ հումքը, որպես կանոն, չմշակված վիճակում փոխադրվում է Ֆրանսիա, Անգլիա, ԱՄՆ և այլ կապիտալիստական երկրներ։ Խոշոր ձեռնարկությունների ճնշող մեծամասնությունը, այդ թվում նաև լեռնամշակման արդյունաբերության բոլոր ձեռնարկությունները, գտնվում են ֆրանսիական ընկերությունների ձեռքում։ Այդ ընկերություններին մասնակցու[illegible] և ամերիկյան և անգլիական կապիտալը։

Ալժիրի արդյունաբերության մեջ զբաղված է մոտ 400 հազար բանվոր, որոնցից մոտ 300 հազարը արմատական բնակիչներ են։ Բնիկ ալժիրցի բանվորները գտնվում են առավել վատթար պայմաններում, քան եվրոպացի բանվորները։ Ալժիրցի բանվորները, որպես կանոն, զբաղված են առավել ծանր և ցածր վարձատրվող աշխատանքներում։ Նրանց աշխատավարձը միջին չափով 40—50 տոկոսով ցածր է նույնպիսի որակավորում ունեցող եվրոպացի բանվորների աշխատավարձից։

Ալժիրի ժողովուրդը ուժեղ քաղաքական խտրականության է ենթարկվում։ Ֆրան-

սիական պառլամենտի և Ալժիրի տեղական ինքնավարության օրգանների ընտրությունների ժամանակ, պետական ծառայության ընդունվելիս, ինչպես նաև դատարանակազմության, ժողովրդական կրթության և այլ բնագավառներում Ալժիրի բնակչությունը, եվրոպական վերաբնակների համեմատությամբ, գտնվում է ոչ իրավահավասար պայմաններում։

Ալժիրի ժողովրդի պայքարը իր անկախության և ազատության համար ահա արդեն հարյուր քսան տարի է, ինչ չի դադարում։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ազգային-ազատագրական շարժումը Ալժիրում ավելի ընդլայնվեց և ամրապնդվեց։ 1954 թվականի աշնանը Ալժիրի ազգային-ազատագրական շարժման ակտիվ մասնակիցները հիմնադրեցին «Միասնության և գործողության ռևոլյուցիոն կոմիտեն», որը ձեռնամուխ եղավ ֆրանսիական գաղութարարների դեմ զինված ապստամբության պրակտիկ նախապատրաստությանը։

1954 թվականի նոյեմբերին արմատական բնակիչներից կազմված պարտիզանական տիպի մի քանի զինված ջոկատներ ֆրանսիական գաղութարարների դեմ զինված ա-



պստամբություն սկսեցին։ Սկզբում ալժիրցի ապստամբներին հաջողվեց ֆրանսիական զորքերից և տիրապետությունից ազատագրել երկրի հարավ-արևելյան լեռնային շրջանները, իսկ հետո զինված պայքարը արագորեն ծավալվեց հյուսիսային ծովափնյա շրջաններում։ Ներկայումս պարտիզանական պատերազմ է տեղի ունենում Ալժիրի համարյա ամբողջ տերիտորիայում, այդ թվում նաև շատ խոշոր քաղաքներում։

Զինված ապստամբության ընթացքում «Միասնության և գործողության ռևոլյուցիոն կոմիտեն» վերափոխվեց Ազգային-ազատագրության ճակատի, որն այժմ իրականացնում է ֆրանսիական գաղութարարների դեմ մղվող պայքարի ղեկավարությունը։ Պարտիզանական ջոկատների բազայի վրա ստեղծվեց Ազգային ազատագրության բանակը, որը գտնվում է Ազգային-ազատագրության ճակատի անմիջական ղեկավարման ներքո։ Նա կազմված է հիմնականում գյուղացիներից, բատրակներից, բանվորներից և Ալժիրի բնակչության այլ խավերից։

Ազգային-ազատագրության ճակատը ստանում է երկրի արմատական բնակչության մեծամասնության աջակցությունը։ Ազգային-ազատագրության ճակատի ղե-

կավոր օրգանների մեջ մտնում են ազգային բուրժուազիայի, ինտելիգենցիայի և գյուղացիության ներկայացուցիչները։ Նրա ծրագիրը նախատեսում է պայքար հանուն Ալժիրի լիակատար անկախության և սուվերեն ռեսպուբլիկայի ստեղծում։ Զինված պայքար մղելով գաղութարարների դեմ Ազգային-ազատագրության ճակատի ղեկավարությունը միաժամանակ չի մերժում Ալժիրի պրոբլեմի խաղաղ կարգավորման հնարավորությունը։ Նա բազմիցս իր պատրաստակամությունն է հայտնել բանակցությունների մեջ մտնելու Ֆրանսիական կառավարության հետ Ալժիրում կրակը դադարեցնելու համար, որպես նախնական պայման առաջ քաշելով այն պահանջը, որ Ֆրանսիան ճանաչի ալժիրի ժողովրդի անկախության իրավունքը։

Սակայն Ֆրանսիայի կառավարող շրջանները մերժեցին Ազգային-ազատագրության ճակատի խաղաղ առաջարկությունները և փորձում են ուժի միջոցով ճնշել Ալժիրի ժողովրդի ազգային-ազատագրական շարժումը։ Այդ նպատակով նրանք Ալժիրում կենտրոնացրել են ավելի քան 500 հազար զինվոր և սպա, այսինքն Ֆրանսիական զինված ուժերի մոտ կեսը։



Գաղութային պատերազմը Ալժիրում թանկ է նստում Ֆրանսիական ժողովրդի վրա։ Բավական է ասել, որ Ֆրանսիայի պետական բյուջեից այդ պատերազմի վրա ամեն տարի ծախսվում է մոտ մեկ և կես միլիարդ ֆրանկ։ Չնայած անձնակազմի և տեխնիկայի մեջ ապստամբների նկատմամբ Ֆրանսիական զորքերի ունեցած վիթխարի գերազանցությանը, նրանց չհաջողվեց ջախջախել Ալժիրի ազգային-ազատագրության բանակը։ Հենվելով Ալժիրի ժողովրդի աջակցության վրա, նա շարունակում է հաջողությամբ պայքարել օկուպանտների դեմ։

Ֆրանսիական գաղութարարները, փորձելով արյան մեջ խեղդել Ալժիրի ազգային-ազատագրական շարժումը, կանգ չեն առնում նույնիսկ ամենադաժան ռեպրեսիաների առջև։ Ամեն օր նրանք սպանում են տասնյակ, իսկ երբեմն էլ նույնիսկ հարյուրավոր ալժիրցի հայրենասերների։ Գաղութային իշխանությունները մասսայական ձերբակալությունների, խուզարկությունների և այլ ռեպրեսիաների են ենթարկում խաղաղ բնակչությանը։ Այսպես կոչված «սանրման օպերացիաների» ժամանակ Ֆրանսիական զորքերը ավերում են ալժիրցիների տները, վնաս հասցնում նրանց ունեց-

վածքին։ Ալժիրի համակենտրոնացման ճամբարներում և բանտերում տանջվում են տասնյակ հազարավոր մարդիկ։

Որքան երկարում է Ալժիրի ժողովրդի դեմ ֆրանսիական իմպերիալիստների գաղութային պատերազմը, այնքան Ֆրանսիայում աճում է դժգոհությունը Ալժիրի նկատմամբ Գի Մոլլեի կառավարության վարած քաղաքականությունից։ Ֆրանսիական ժողովրդի զանազան խավերում ամրապնդվում է այն համոզմունքը, որ Ֆրանսիայի ազգային շահերին հակասող պատերազմն Ալժիրում անհրաժեշտ է անհապաղ դադարեցնել։ Արտահայտելով ժողովրդական լայն մասսաների այդ տրամադրությունները ֆրանսիական կոմունիստական պարտիան համառորեն հանդես է գալիս Ալժիրում գաղութային պատերազմը դադարեցնելու և Ալժիրի հարցը բանակցությունների միջոցով լուծելու օգտին։ Ալժիրի հարցում կառավարության քաղաքականության քննադատությամբ և Ալժիրում Ֆրանսիայի համար անհույս պատերազմը դադարեցնելու պահանջով հանդես են գալիս նաև ֆրանսիական բուրժուական պարտիաների մի շարք ներկայացուցիչներ։

Վերջին ժամանակներս, հատկապես Սա-



հարայի ալժիրյան մասում նավթի և ուրիշ հանքային հանածոների հարուստ հանքավայրեր հայտնաբերվելու կապակցությամբ, Ալժիրի նկատմամբ սկսել են աճող հետաքրքրություն ցուցաբերել ամերիկյան մոնոպոլիաները։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները հաշվի առնելով Ալժիրի բնական հարստությունները և Հյուսիսային Աֆրիկայում նրա ունեցած կարևոր ստրատեգիական դիրքը, ձգտում են Ֆրանսիային այդ երկրից ետ մղել և Ալժիրի ժողովրդի վզին փաթաթել իրենց գաղութային տիրապետությունը։

Ֆրանսիական իմպերիալիստների գաղութային պատերազմն օրինական զայրույթ է առաջացնում արաբական և բոլոր խաղաղասեր ժողովուրդների մեջ։ 1956 թվականի նոյեմբերին ասիական և աֆրիկյան 15 երկրների առաջարկությամբ, Ալժիրի հարցը մտցվեց ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 11-րդ սեսիայի օրակարգի մեջ։

Փետրվարի առաջին կեսին ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայում Ալժիրի հարցի քննարկումը կրեց շատ սուր բնույթ։ Այդ հարցի շուրջը մտքերի փոխանակության ժամանակ Քաղաքական կոմիտեում ելույթ ունեցան զանազան պետությունների ավելի

*քան 50 ներկայացուցիչներ։ Ասիական և աֆրիկյան երկրների պատվիրակները ՍՍՌՄ-ի և ժողովրդա-դեմոկրատական երկրների պաշտպանությամբ պնդում էին, որպեսզի ՄԱԿ-ը հանձնարարականներ ընդունի, որոնք Ֆրանսիային կոչ անեն ինքնորոշման իրավունք տալ Ալժիրի ժողովրդին, անհապաղ ձեռնամուխ լինել Ալժիրում ռազմական գործողությունները դադարեցնելու վերաբերյալ ֆրանս-ալժիրյան բանակցություններին և ՄԱԿ-ի Կանոնադրության համապատասխան տարաձայնությունների խաղաղ կարգավորմանը։ Սակայն ասիական և աֆրիկյան 18 պետությունների մտցրած բանաձևի նախագիծը Ֆրանսիայի, ԱՄՆ-ի, Անգլիայի և նրանց պաշտպանող երկրների ձայների միջոցով մերժվեց Քաղաքական կոմիտեում։*

*ՄԱԿ-ում Ալժիրի հարցի քննարկման արդյունքները մեկ անգամ ևս ցույց տվեցին, որ Ալժիրի ազգային-ազատագրական շարժումը գտնում է համաշխարհային հասարակայնության լայն պաշտպանությունը։ Տարակույս չկա, որ իր հայրենիքի ազատության և անկախության համար Ալժիրի ժողովրդի մղած հերոսական պայքարը մոտ ապագայում հաղթանակի կհասնի։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՊՐԻԼ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## *1. Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 87-ԱՄՅԱԿԸ*

ա) Վ. Ի. Լենինը Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ստեղծողն է։

բ) Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը։

գ) Անխախտ է ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։

դ) Վ. Ի. Լենինը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի մասին։

ե) Լենինիզմը աշխարհի աշխատավորների պայքարի դրոշն է՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։

զ) Սովետական պետությունը վարում է երկու սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականություն։

## *2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ*

Գրականություն

1. ՍՏԵՓԱՆՅԱՆ— Զեկուցում Հայկական ՍՍՌ Գե-

տագույն Սովետի չորրորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 17-ի համարում։*

Ս. ՄՈՎՍԻՍՅԱՆ— Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1957 թվականի պետական պլանի մասին, զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի չորրորդ սեսիայում. *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 16-ի համարում։*

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման 1957 թվականի պլանը, *«Ս. Հ.»-ի այս տարվա մարտի 16-ի առաջնորդողը։*

### *3. ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԳՈՐԾԵՐՈՎ*

Գրականություն

ՍՄԿՊ Կենտկոմի որոշումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 17-ի համարում։*

Դեպի Մեծ Հոկտեմբերի քառասունամյակը. «Պրավդա»-ի *մարտի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 19-ի համարում։*

### *4. ԼԻՈՎԻՆ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԿԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ*

Գրականություն

Արդյունաբերության ու շինարարության կառավարման կազմակերպումը է՛լ ավելի կատարելագործելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը ընկ. Ն.



Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, *ընդունված 1957 թվականի փետրվարի 14-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի փետրվարի 16-ի համարում։*

Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը՝ նոր պահանջների մակարդակին, *«Պրավդա»-ի առաջնորդող հոդվածը տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի փետրվարի 19-ի համարում։*

Արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումը էլ ավելի կատարելագործելու համար, *Երևանի քաղաքային պարտիական ակտիվի ժողովը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի փետրվարի 28-ի համարում։*

### *5. ԺԱՄԱՆԱԿԻՆ ԵՎ ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՄԲ ԿԱՏԱՐԵՆՔ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ*

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցումը պարտիայի 20-րդ համագումարին, *մաս 2-րդ, Գյուղատնտեսություն, Հայպետհրատ, 1956։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Ճառ Կրասնոդարի երկրամասի գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 13-ի համարում։*

Կազմ ու պատրաստ դիմավորել գարնանացանը, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 3-ի առաջնորդողը։*

1957 թվականը դարձնենք գյուղատնտեսության նոր

ճզոր վերելքի տարի, *գյուղատնտեսության առաջավորների ելույթները, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 2-րդ համարում։*

## 6. ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԽՆԱՄՔԸ, ԱՆԿՈՐՈՒՍՏ ԱՃԵՑՆԵՆՔ ՄԱՏՂԱՇԸ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, ՍՄԿՊ 20-րդ համագումարին տված զեկուցումից, *էջ 88—93, Հայպետհրատ, 1956։*

Հայաստանի անասնաբուծության աշխատողների ռեսպուբլիկական խորհրդակցության մասնակիցների Դիմումը *ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների բոլոր անասնապահներին, անասնաբուծության բնագավառի բոլոր մասնագետներին, կոլտնտեսությունների և ՄՏ կայանների ղեկավարներին, շրջանային պարտիական ու սովետական կազմակերպություններին և գյուղատնտեսության օրգանների աշխատողներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 31-ի համարում։*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը գյուղատնտեսության առավելապես աչքի ընկած առաջավորներին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Պատվոգրով պարգևատրելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի փետրվարի 28-ի համարում։*

Անասնաբուծության վերաբերյալ հոդվածներ, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1957 թվականի 2-րդ համարում, էջ 20—30։*



## 7. ԼՐԻՎ ԿԱՐՈՂՈՒԹՅԱՄԲ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Գյուղատնտեսության մեքենայացումը, *ՍՄԿՊ 20-րդ համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Ճառ Ստալինաբադում, Տաջիկական ՍՍՌ-ին Լենինի շքանշան հանձնելու կապակցությամբ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 22-ի համարում։*

Մեխանիզացիա և էլեկտրիֆիկացիա, *գյուղատնտեսական տեխնիկայի և ՄՏԿ-ների աշխատանքի վերաբերյալ հոդվածներ, տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1957 թվականի 2-րդ համարում։*

## 8. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՆԿԱՐԻՉՆԵՐԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Գրականություն

ՍՄԿՊ Կենտկոմի ողջույնը Սովետական նկարիչների Համամիութենական առաջին համագումարին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 2-ի համարում։*

Նյութեր Սովետական Նկարիչների Համամիութենական առաջին համագումարի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 2-ի, 3-ի, 5-ի, 6-ի և 7-ի համարներում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիա-

յի Կենտրոնական Կոմիտեին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 9-ի համարում։*

*9. ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ*

Գրականություն

Հայկական ՍՍՌ վիճակագրական վարչության հաղորդագրությունը Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1956 թվականի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 9-ի համարում։*

Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի նոր վերելքի համար, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 9-ի առաջնորդողը։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— *Ճառ Երևանի քաղաքային Սովետի № 1 ընտրական օկրուգի ընտրողների ժողովում, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 10-ի համարում։*

*10. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՆ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ*

Գրականություն

Դ. Տ. ՇԵՊԻԼՈՎ— Սովետական Միության միջազգային դրության և արտաքին քաղաքականության մասին: *Զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի վեցերորդ սեսիայում։ Տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի փետրվարի 13-ի համարում։*

ԴԵԿԼԱՐԱՑԻԱ Սովետական Միության և Բուլղարիա-



յի ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարության պատվիրակությունների բանակցությունների մասին, *տպագրված Ս. Հ.»-ի 1957 թվականի փետրվարի 21-ի համարում։*

Ընդդեմ «Սառը պատերազմի» քաղաքականության, հանուն միջազգային լայն համագործակցության, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի փետրվարի 20-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ


Стр.

**МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД**

Л. Степанян.—Государственный бюджет Армянской ССР на 1957 год . . . . 1

Г. Степанян.—Организованно провести весенний сев 1957 года. . . . . . 13

**ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ**

В. Казарян.—Наш агитколлектив . . 21

**ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ**

Достижение нашей республики в 1956 году (цифры и факты) . . . . . . 26

**НА МЕЖДУНАРОДНЫЕ ТЕМЫ**

С. Танин.—Алжир борется . . . . 32

**В ПОМОЩЬ АГИТАТОРАМ**

Темы и литература для бесед агитаторов в апреле месяце . . . . . . . 43


---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՎՐԹ. ՓԱՓԱԶՅԱՆ— «Զրույցներ»: Գինը 2 ռ., 119 էջ, տիրաժ 25.000։

Վ. ԱՆԱՆՅԱՆ— «Հովազաձորի գերիները»: Գինը 11 ռ. 20 կ., 535 էջ, տիրաժ 10.000։

ԼՈՊԵ ԴԵ ՎԵԳԱ — «Պարտիզպանի շունը»: Գինը 4 ռ., 135 էջ, տիրաժ 3.000։

ԿՐԻՇԱՆ ՉԱՆԴՐ— «Պատմվածքներ»: Գինը 6 ռ. 35 կ., 348 էջ, տիրաժ 5.000։

ԵՎԱ ԿՅՈՒՐԻ— «Մարի Կյուրիի կյանքը»: Գինը 2 ռ. 60 կ., 179 էջ տիրաժ 5.000

---


**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 6** **1957 г.**

ՎՖ 02072 Պատվեր 273 Տիրաժ 8.360

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.